## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։

---

# ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ (ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ) ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ

# ԴԻՄՈՒՄԸ

## ԲՈԼՈՐ ԸՆՏՐՈՂՆԵՐԻՆ, ԲԱՆՎՈՐՆԵՐԻՆ ԵՎ ԲԱՆՎՈՐՈՒՀԻՆԵՐԻՆ, ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐԻՆ ԵՎ ԳԵՂՋԿՈՒՀԻՆԵՐԻՆ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՌԱԶՄԻԿՆԵՐԻՆ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՆՏԵԼԻԳԵՆՑԻԱՅԻՆ

*ԸՆԿԵՐՆԵ՛Ր։*

*1950 թվականի մարտի 12-ին Սովետական Միության աշխատավորները ընտրելու են ՍՍՌ Միության Գերագույն Սովետի դեպուտատներ։*

*Առաջիկա ընտրություններում, ինչպես և 1937 ու 1946 թվականների ընտրություններում, Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան հանդես է գալիս անկուսակցական բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի հետ միասնական բլոկ, սերտ դաշինք կնքած։ Կոմու-*

նիստերի և անկուսակցականների բլոկը ցուցադրել է իր մեծ ուժը, այն բնական և կենսական գործ է, սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական անխորտակելի միասնության արտահայտությունը։ Անցյալ ընտրությունների ժամանակ միահամուռ կերպով ձայն տալով այդ փորձված բլոկի թեկնածուների օգտին, Սովետական Միության քաղաքացիներն ու քաղաքացուհիները ձայն տվին բոլշևիկյան պարտիայի քաղաքականության օգտին, մեր սոցիալիստական պետության հզորության հետագա ամրապընդման օգտին։

Ինչպես և անցյալ ընտրական կամպանիաների ժամանակ, պարտիան դեպի ընտրությունները է գնում պրոֆեսիոնալ միությունների, կոմերիտմիության և աշխատավորների մյուս կազմակերպությունների ու ընկերությունների հետ միասին։ Դեպուտատության թեկնածուները կլինեն ընդհանուր՝ ինչպես կոմունիստների, այնպես էլ անկուսակցականների համար։

Կոմունիստական պարտիան ընտրողներին կոչ է անում ՍՍՌ Միության Գերագույն Սովետի առաջիկա ընտրություններին ձայն տալ կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին։



Պարտիան վստահ է, որ բոլոր ընտրողները նորից, մեկ մարդու նման, միահամուռ կերպով ՍՍՌ Միության Գերագույն Սովետում կընտրեն այն թեկնածուներին, որոնց առաջադրում է կոմունիստական պարտիան՝ անկուսակցականների հետ միասին, նորից մեծ վստահություն կցուցաբերեն Լենինի-Ստալինի պարտիայի նկատմամբ։

Կոմունիստական պարտիան ընտրողների այդ վստահության, այդ աջակցության վրա վստահ է այն պատճառով, որ սովետական մարդիկ բազմամյա փորձով համոզվել են պարտիայի քաղաքականության ճշտության մեջ, քաղաքականություն, որը համապատասխանում է ժողովրդի կենսական շահերին։ Պարտիայի ամբողջ գործունեությունը անձնվեր ծառայություն է ժողովրդին և նա չունի ավելի բարձր շահեր, քան ժողովրդի շահերը։

Բոլշևիկների պարտիան մեր երկրի ժողովուրդներին հասցրեց համաշխարհային-պատմական հաղթանակի 1917 թվականի հոկտեմբերին, սովետական իշխանության հաստատմանը, կազմակերպեց ինտերվենտների և ներքին կոնտրռևոլյուցիայի ջախջախումը։ Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը կա-

ուցեց սոցիալիստական հասարակարգ, ընդմիշտ ոչնչացրեց մարդու շահագործումը մարդու կողմից, վերացրեց սոցիալական և ազգային ճնշումը, ստեղծեց բոլոր պայմանները ունևոր և կուլտուրական կյանքի համար։ Սոցիալիստական մեծ բարեփոխումների շնորհիվ Սովետական Միությունը վերածվեց ինդուստրիալ-կոլխոզային հզոր տերության։ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին սովետական ժողովուրդը՝ կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ընկեր Ստալինի իմաստուն առաջնորդությամբ սոցիալիզմի մեծ նվաճումները պաշտպանեց գերմանական և ճապոնական իմպերիալիստներից, ամբողջ աշխարհի ժողովուրդներին փրկեց ֆաշիստական ստրկացման սպառնալիքից։ Հետպատերազմյան ժամանակաշրջանում սովետական ժողովուրդը՝ կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռք բերեց նոր մեծ հաջողություններ։

Սովետական ժողովուրդն օրինական հպարտությամբ է նայում իր պայքարի և աշխատանքի արդյունքներին։ Սովետական մարդիկ լի են անսասան վստահությամբ կոմունիզմի ուղիով մեր երկրի հետագա առաջընթացի հաջողությունների նկատմամբ։



Ներկայումս չկա ավելի ամուր պետություն, քան Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը։ Սովետական հասարակական և պետական կարգը հանդիսանում է հասարակության կազմակերպման լավագույն ձևը, ամենակենսունակ կարգը աշխարհում։

Իր ամբողջ պատմության ընթացքում մեր Հայրենիքը դեռևս երբեք չէր ունեցել այնքան արդարացիորեն և լավ կազմակերպված պետական սահմաններ։ Սովետական Ուկրաինան մեկ ընտանիքի մեջ է հավաքել ուկրաինական ամբողջ ժողովրդին։ Սովետների դրոշի տակ վերամիավորվել է բելոռուսական ժողովուրդը։ Սովետական միասնական ռեսպուբլիկայում է միավորվել մոլդավական ժողովուրդը։ Չկա այլևս Արևելյան Պրուսիան, որը շատ դարեր ծառայել է որպես պլացդարմ մեր Հայրենիքի վրա հարձակվելու համար։ Հանուն պաշտպանունակության ամրապընդման շահերի, ամրացված են Լենինգրադի մերձակա նոր սահմանները։ Ուժեղացել է մեր սահմանների պաշտպանությունը Հեռավոր Արևելքում։

Մեր սոցիալիստական տերության համաշխարհային-պատմական այս հաջողությունները սովետական ժողովուրդը ձեռք է բերել

կոմունիստական պարտիայի, աշխատավոր-
ների մեծ առաջնորդ ընկեր Ստալինի ղեկա-
վարությամբ։ Լենինի-Ստալինի պարտիան
իր սրբազան պարտքն է համարում հետա-
գայում ևս ամրապնդել սովետական սոցիա-
լիստական պետությունը՝ մեր երկրի ժողո-
վուրդների խաղաղ աշխատանքի պատվարը։
Ձայն տալով կոմունիստների և անպար-
տիականների բլոկի թեկնածուների օգտին,
ընտրողները ձայն կտան այն բանի օգտին,
որ մեր սոցիալիստական Հայրենիքը այսու-
հետև էլ լինի հզոր և ազատ, որ մեր սովե-
տական պետությունը լինի ուժեղ և անպար-
տելի։

Գերմանա-ֆաշիստական զավթիչները հըս-
կայական վնաս հասցրին մեր ժողովրդական
տնտեսությանը, ավերելով հարյուրավոր և
հազարավոր քաղաքներ ու գյուղեր, ձեռնար-
կություններ, կոլխոզներ ու սովխոզներ։ Ա-
մեն մի այլ, նույնիսկ ամենախոշոր կապի-
տալիստական պետություն, այդպիսի կո-
րուստ կրելով, անխուսափելիորեն տասնյակ
տարիներով հետ կշպրտվեր, անխուսափե-
լիորեն կվերածվեր երկրորդական տերու-
թյան։

Սովետական պետության հետ այդ բանը
չկատարվեց։ Արտադրության անարխիայից,



ճգնաժամերից, գործազրկության, մասսանե-
րի աղքատության սարսափներից և կապիտա-
լիզմի այլ խոցերից ու արատներից ազատ
ՍՍՌՄ-ի սոցիալիստական էկոնոմիկան մե-
ծագույն առավելություններ ունի կապիտա-
լիստական էկոնոմիկայի հանդեպ։ Հաշվի
առնելով սովետական սոցիալիստական կար-
գի հզոր ուժերը, բոլշևիկների պարտիան
նշեց հետպատերազմյան ժամանակաշրջա-
նում մեր ժողովրդական տնտեսության վե-
րականգնման ու զարգացման և սովետա-
կան կուլտուրայի հետագա ծաղկման բարձր
տեմպեր։

Պարտիայի և ժողովրդի մեծ առաջնորդ
ընկեր Ստալինը 1946 թվականի փետրվարի
9-ին ընտրողների ժողովում արտասանած
իր պատմական ճառում նշեց ամենամոտ
ժամանակամիջոցում կոմունիստական պար-
տիայի աշխատանքի պլանները՝ վերականգ-
նել երկրի տուժած շրջանները, վերականգ-
նել արդյունաբերության և գյուղատնտեսու-
թյան նախապատերազմյան մակարդակը և
այնուհետև գերազանցել այդ մակարդակը
քիչ թե շատ զգալի չափերով։ Ավելի երկա-
րատև ժամանակաշրջանի համար ընկեր
Ստալինը նշեց ժողովրդական տնտեսության
հուժկու վերելքի ծրագիրը այն հաշվով, որ

մեր արդյունաբերության մակարդակը բարձ-
րացվի, նախապատերազմյան մակարդակի
համեմատությամբ, օրինակ, 3 անգամ, և
գծեց մեր երկրում կոմունիստական հա-
սարակության կառուցման ուղիները։
Կոմունիստական պարտիայի կոչով ամ-
բողջ երկրում համաժողովրդական սոցիա-
լիստական մրցություն ծավալվեց հնգամյա
պլանը ժամկետից շուտ կատարելու հա-
մար։ Նոր ուժով երևան եկավ սովետական
մարդկանց ստեղծագործական նախաձեռ-
նությունը, նրանց անհուն նվիրվածությու-
նը՝ իրենց սոցիալիստական Հայրենիքին։
Սովետական ժողովուրդը նոր հզոր վե-
րելքի հասավ սոցիալիստական տնտեսու-
թյան և կուլտուրայի բոլոր բնագավառնե-
րում։ Նորտակվեցին իմպերիալիստների այն
հույսերը, թե մարդկության թշնամու՝ ֆա-
շիզմի դեմ հաղթանակի հասնելու համար
մեծ զոհեր կրած Սովետական Միությունը
չի հաղթահարի հետպատերազմյան շինարա-
րության դժվարությունները։
Հետպատերազմյան տարիներին անշեղո-
րեն աճում և ամրապնդվում է մեր արդյու-
նաբերությունը, նրա հաջողությունները ու-
րախություն են պատճառում սովետական
բոլոր մարդկանց։ Այն ժամանակ, երբ կա-



պիտալիստական երկրներում ավելի ու ա-
վելի ուժեղ են դրսևորվում հարաճուն տնտե-
սական ճգնաժամի նշանները, կրճատվում է
արդյունաբերական արտադրության ծավա-
լը, աճում է գործազրկությունը, սովետա-
կան արդյունաբերության համախառն ար-
տադրանքը հետպատերազմյան հնգամյակի
անցած ժամանակաշրջանում տարեկան ա-
վելանում էր 20 և ավելի տոկոսով։
ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համա-
խառն արտադրանքը 1949 թվականին, նա-
խապատերազմյան՝ 1940 թվականի արտա-
դրությունը գերազանցեց 41 տոկոսով։
Անցած տարվա վերջերին արդյունաբերու-
թյան համախառն արտադրանքի թողարկու-
մը գերազանցեց հնգամյա պլանով 1950
թվականի համար սահմանված մակարդակը։
Թշնամու օկուպացիայից ազատագրված
շրջաններում ձեռք է բերված արդյունաբե-
րական արտադրանքի նախապատերազմյան
մակարդակը։ Մեր երկրում արագորեն զար-
գանում է երկաթուղային, ջրային, ավտոմո-
բիլային և օդային տրանսպորտը։
Մեր ձեռնարկություններում արմատավոր-
վում է նոր առաջավոր տեխնիկան, լայն
չափերով իրականացվում է աշխատատար և
ծանր աշխատանքների մեքենայացումը, ար-

տեխնիկական պրոցեսների ավտոմատացումը։ Այս բոլորն զգալիորեն հեշտացնում է սովետական մարդու աշխատանքը, բարձրացնում է նրա արտադրողականությունը, ապահովում է արտադրանքի թողարկման աճը, նրա որակի բարելավումը և ինքնարժեքի իջեցումը։

Սոցիալիստական արդյունաբերության վերականգնման և հետագա զարգացման համար մղվող պայքարում այդ նշանավոր հաջողությունները սովետական ժողովուրդը ձեռք է բերել կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ, մեր մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի հանճարեղ առաջնորդությամբ։

Կոմունիստական պարտիան բոլոր աշխատավորների հետ միասին այսուհետև էլ կպայքարի ՍՍՌՄ սոցիալիստական արդյունաբերության և տրանսպորտի անշեղ վերելքի համար։

Ձայն տալով կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին, ընտրողները ձայն կտան սոցիալիստական արդյունաբերության նոր ծաղկման օգտին, այն բանի օգտին, որ մեր սոցիալիստական տնտեսությունն անշեղորեն առաջ շարժվի է՛լ ավելի բարձր տեմպերով։



Մեր երկրի սոցիալիստական գյուղատնտեսությունը հետպատերազմյան զարգացման պայմաններում կրկին ցույց տվեց իր կենսական մեծ ուժը։ Սովետական կառավարության հսկայական օգնության հետևանքով և կոլխոզային գյուղացիության անձնվեր աշխատանքի շնորհիվ մեր գյուղատնտեսությունը հաջողությամբ հաղթահարեց պատերազմի հետևանքները և անշեղ վերելք է ապրում։ Սոցիալիստական գյուղատնտեսության համախառն արտադրանքը, ամբողջությամբ վերցրած, անցած 1949 թվականին գերազանցեց նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը։ Գյուղատնտեսության մեջ արդեն լուծված է հացահատիկային պրոբլեմը՝ հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը կազմեց 7,6 միլիարդ փութ, գերազանցելով նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը և համարյա հասել է հնգամյա պլանով 1950 թվականի համար սահմանված մակարդակին։ Բամբակի, վուշի, շաքարի ճակնդեղի և կարտոֆիլի բերքատվությունն ու համախառն բերքը նույնպես գերազանցեցին նախապատերազմյան մակարդակը։ Լուրջ հաջողություններ են ձեռք բերված հանրային անասնաբուծության վերականգնման ու զարգաց-

ման գործում։ Ներկայումս կոլխոզներն ավելի շատ հանրային մթերատու անասուն ունեն, քան նախապատերազմյան 1940 թվականին։

Հաջողությամբ է կենսագործվում բնության վերափոխման ստալինյան մեծ պլանը։ Կոլխոզները և սովխոզները 1949 թվականին համարյա կրկնակի չափով գերակատարեցին անտառատնկումների պլանը։ Սովետական գյուղացիությունը մեծ ոգևորությամբ պայքարում է հանրային անասնաբուծության զարգացման եռամյա պլանը կատարելու համար։ Տարեց-տարի աճում է գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը։ Արդեն 1949 թվականին մեր կոլխոզները, ՄՏ կայանները և սովխոզները երեք-չորս անգամ ավելի շատ տրակտոր, ավտոմեքենա և գյուղատնտեսական մեքենաներ ստացան, քան նախապատերազմյան 1940 թվականին։ Ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում սովետական գյուղի էլեկտրիֆիկացիան։ Գյուղատնտեսական աշխատանքը մեր երկրում ավելի ու ավելի է դառնում ինդուստրիալ աշխատանքի տարատեսակը։ Անհետանում է երբեմնի հակադրությունը քաղաքի և գյուղի միջև։

Գյուղատնտեսության վերելքի, սովետա-



կան գյուղում սոցիալիստական կյանքի կառուցման այս նշանավոր հաջողությունները մեր ժողովուրդը ձեռք է բերել Լենին-Ստալինի մեծ պարտիայի ղեկավարությամբ։

Կոմունիստական պարտիան իր առաջ խնդիր է դնում՝ ապահովել սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացումը, ամրապնդել մեր կոլխոզները, մեքենա-տրակտորային կայանները և սովխոզները։ Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ մեր հողագործությունը շարունակ տա հացահատիկային, տեխնիկական և այլ գյուղատնտեսական կուլտուրաների բարձր կայուն բերք, որ է՛լ ավելի արագորեն զարգանա մեր հանրային անասնաբուծությունը, որ է՛լ ավելի բազմապատկվի կոլխոզների սոցիալիստական սեփականությունը, ավելի ունևոր և ավելի կուլտուրական ապրեն կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները։

Ձայն տալով կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին, ընտրողները ձայն կտան մեր երկրում կոլխոզային կարգի հետագա բարգավաճման օգտին, երկրում բնակչության համար գյուղատնտեսական մթերքների և արդյունաբերության համար հումքի առատություն ստեղծելու օգտին, սոցիալիստական գյուղատն-

տեսության նորանոր հաջողությունների օգտին։

Ժողովրդական տնտեսության մշտական աճման հիման վրա անշեղորեն բարձրանում է մեր երկրի աշխատավորների բարեկեցությունը։ Օրեց-օր կյանքը դառնում է է՛լ ավելի հարուստ և ունևոր։

Այն ժամանակ, երբ կապիտալիստական երկրներում աճում է աղքատությունն ու գործազրկությունը, կատաստրոֆիկ կերպով իջնում է աշխատավորների կենսամակարդակը, Սովետական Միությունում աշխատավորների կյանքի նյութական և կուլտուրական մակարդակն անընդհատ աճում է։ Ի տարբերություն կապիտալիզմի, սոցիալիզմն աներևակայելի է առանց ժողովրդի բարեկեցության նկատմամբ պետության ամենօրյա հոգատարության։ Այդ մեր սոցիալիստական հասարակության զարգացման կարևորագույն օրենքն է։ Սովետական մարդիկ չգիտեն գործազրկության սարսափները և դրա հետ կապված բոլոր աղետները. բանվորների ու ծառայողների թիվը մեր երկրում շարունակ ավելանում է։

Սովետական Միության ազգային եկամուտը 1949 թվականին 1940 թվականի մակարդակը գերազանցեց 36 տոկոսով։ Մեր



երկրի ազգային եկամուտի անընդհատ աճը թույլ տվեց զգալիորեն բարելավել բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի նյութական դրությունը։ Բանվորների և ծառայողների եկամուտները, հաշված յուրաքանչյուր աշխատողին, 1949 թվականին՝ 1940 թվականի համեմատությամբ համադրական գներով ավելացել է 24 տոկոսով։ Գյուղացիների եկամուտները համապատասխանորեն ավելացել են ավելի քան 30 տոկոսով։

1947 թվականին Սովետական Միությունում անցկացվեցին դրամական ռեֆորմ և պարենային ու արդյունաբերական ապրանքների քարտային սիստեմի վերացում։ Դրա հետ միասին իրագործված մասսայական սպառման ապրանքների մանրածախ գների իջեցումը մեկ տարվա ընթացքում բնակչությանը տվեց մոտ 86 միլիարդ ռուբլի գումարի շահում։ Գների երկրորդ իջեցումը, որն ավարտվեց 1949 թվականի մարտի 1-ին, մեկ տարվա ընթացքում բնակչության համար լրացուցիչ կերպով ապահովեց մոտ 71 միլիարդ ռուբլի գումարի շահում։ Գների իջեցման անշեղորեն կիրառվող քաղաքականության շնորհիվ բարձրանում է սովետական ռուբլու գնողունա-

կությունը, շարունակ աճում է բանվորների
ու ծառայողների ռեալ աշխատավարձը։
Սիստեմատիկաբար ընդլայնվում է ապրան-
քաշրջանառությունը, ավելանում է լայն
սպառման առարկաների արտադրությունը։
Արդեն 1949 թվականին կարևորագույն ապ-
րանքների գծով ժողովրդական սպառումը
գերազանցեց նախապատերազմյան մակար-
դակը։

Մեր երկրում լայնորեն ծավալվել է
բնակարանային շինարարությունը։ Հետպա-
տերազմյան հնգամյակի չորս տարվա ըն-
թացքում քաղաքներում վերականգնվել և
նոր կառուցվել է ավելի քան 72 միլիոն
քառակուսի մետր բնակելի տարածություն.
գյուղական վայրերում այդ ժամանակվա
ընթացքում կառուցվել է ավելի քան 2 մի-
լիոն 300 հազար բնակելի տուն, ամենուրեք
կառուցվում են հիվանդանոցներ, խանութ-
ներ, մանկական և կուլտուրական հիմնարկ-
ներ։ Սովետական բնակչությունը ստանում է
ձրի բուժօգնություն։ Աճում է աշխատավոր-
ների համար սանատորիաների և հանգստյան
տների ցանցը։ Մեծ օգնություն է ցույց տըր-
վում բազմազավակ մայրերին, ծերերին,
պատերազմի և աշխատանքի հաշմանդամ-
ներին։



Իր նյութական բարեկեցության վերելքի
գործում այս հաջողությունները մեր ժողո-
վուրդը ձեռք է բերել կոմունիստական պար-
տիայի ղեկավարությամբ, աշխատավորների
կարիքների նկատմամբ մեր հայր և բարե-
կամ մեծ Ստալինի անդուլ հոգատարության
շնորհիվ։

Կոմունիստական պարտիան առաջիկայում
էլ կպայքարի սովետական ժողովրդի կյան-
քի նյութական մակարդակի բարձրացման
համար։ Նա կձգտի ՍՍՌՄ ազգային եկամու-
տի հետագա աճման, բանվորների և ծառա-
յողների ռեալ աշխատավարձի բարձրաց-
ման, մասսայական սպառման ապրանքների
գների հետագա իջեցման՝ աշխատանքի ար-
տադրողականության բարձրացման և ար-
տադրանքի ինքնարժեքի իջեցման հիման
վրա։

Պարտիան իր առաջ խնդիր է դնում հե-
տագայում էլ ընդլայնել բնակարանային
շինարարությունը, օր-ավուր հոգ տանել քա-
ղաքների և գյուղերի բարեկարգման, դըպ-
րոցների և հիվանդանոցների, մանկական,
կոմունալ-կենցաղային և կուլտուրական հիմ-
նարկների աշխատանքի բարելավման մա-
սին։

Զայն տալով կոմունիստների և անկուսակ-

տիտղոսների բլոկի թեկնածուների օգտին, ընտրողները ձայն կտան մեր ժողովրդի նյութական բարեկեցության հետագա վերելքի օգտին, սովետական մարդկանց է՛լ ավելի երջանիկ, ունևոր և կուլտուրական կյանքի օգտին։

Կոմունիստական պարտիան հետպատերազմյան ժամանակաշրջանում իր առաջ նպատակ դրեց վերականգնել ֆաշիստական բարբարոսների կողմից ավերված դպրոցները և կուլտուրական մյուս հիմնարկները, հասնել ՍՍՌՄ-ում կուլտուրայի հետագա ծաղկման։ Սովետական գիտության առաջ ընկեր Ստալինը խնդիր դրեց՝ ամենամոտ ժամանակում հասնել և գերազանցել մեր երկրի սահմաններից դուրս գիտության նվաճումները։

Վերջին ընտրություններից հետո անցած 4 տարվա ընթացքում մեր երկրում վերականգնվել և կառուցվել են հազարավոր նոր դպրոցներ, գրադարաններ, ակումբներ, թատրոններ, կինոներ։ Տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում, տեխնիկումներում և մասնագիտական այլ ուսումնական հաստատություններում սովորում են ավելի քան 36 միլիոն մարդ։ Իրագործվում է ընդհանուր պարտադիր յոթնամյա ուսուցումը։



Երկրի բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են մեկ միլիոն 128 հազար մարդ, որը 316 հազար մարդով գերազանցում է ուսանողների նախապատերազմյան թիվը։ Ժողովրդի շահերին ծառայող սովետական գիտությունը լուրջ հաջողություններ է ձեռք բերել։ Սովետական գիտնականները տիրապետել են ատոմային էներգիա ստանալու գաղտնիքին։ Սովետական գիտության նվաճումները, շրջապատված պարտիայի ու կառավարության ուշադրությամբ և հոգատարությամբ, օգնում են սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացմանը։

Սովետական բոլոր ռեսպուբլիկաներում հաջողությամբ զարգանում է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական գրականությունը և արվեստը։ Ստեղծված են գրականության ու արվեստի բարձր գաղափարական և հայրենասիրական երկեր, որոնք ծառայում են ժողովրդի շահերին, արտացոլում են նրա ստեղծագործական ջանքերը, նրա հերոսությունը և անձնվիրությունը կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում։

Այս հաջողությունները սովետական ժողովուրդը ձեռք է բերել կոմունիստական պար-

տիայի ղեկավարությամբ։ Կոմունիստական պարտիան մտադիր է մոտակա տարիներին հասնել սովետական կուլտուրայի է՛լ ավելի մեծ հաջողությունների։ Պարտիան կպայքարի սովետական գիտության նորանոր նվաճումների համար, արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության մեջ տեխնիկական անշեղ առաջադիմության համար։

Ձայն տալով կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին, ընտրողները ձայն կտան մեր երկրում ժողովրդական լուսավորության հետագա վերելքի օգտին, աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի անշեղ աճման օգտին, սովետական գիտության ու կուլտուրայի նոր ծաղկման օգտին։

Մեր բազմազգ սոցիալիստական պետության մեջ բոլոր ժողովուրդներն ընթանում են զարգացման մեկ ընդհանուր սոցիալիստական ուղիով։ Ժողովուրդների մեծ բարեկամությունը, նրանց եղբայրական համագործակցությունը և փոխադարձ օգնությունը, որոնք ՍՍՌՄ-ում զարգանում են սոցիալիստական ինտերնացիոնալիզմի դրոշի տակ, սովետական պետության կարևորագույն նվաճումներից մեկն են։ Անցյալում կեղեքված



ազգերը սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում հասել են քաղաքական, տնտեսական և կուլտուրական աննախընթաց ծաղկման։ Ընկեր Ստալինի կողմից ոգեշընչվող՝ ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը մեր սոցիալիստական Հայրենիքի հզորության աղբյուրներից մեկն է։

Հայրենական Մեծ պատերազմի ժամանակաշրջանում մեր երկրի ժողովուրդների բարեկամությունն է՛լ ավելի ամրապնդվեց ու կոփվեց։ Պատերազմը նոր ուժով ամբողջ աշխարհին ցույց տվեց, որ ազգային հարցը և ազգերի համագործակցության պրոբլեմը ՍՍՌՄ-ում լուծված են ավելի լավ, քան որևէ այլ բազմազգ պետության մեջ։

ՍՍՌՄ-ում սոցիալիստական ազգերի բարեկամությունը և փոխադարձ օգնությունն ամրապնդվում են ու զարգանում։ Ժողովուրդների բարեկամության արտահայտություններից մեկը հանդիսացավ մեր երկրի բոլոր ժողովուրդների եղբայրական օգնությունը թշնամու օկուպացիայից տուժած ռեսպուբլիկաներին։ Հետպատերազմյան ստալինյան հնգամյակում մեր ամբողջ Հայրենիքի հզորության հետագա ամրապնդման շահերն ամբողջությամբ վերցրած, զուգակցվում են յուրաքանչյուր առանձին սովետական ռե-

ցիալիստական ռեսպուբլիկայի շահերի հետ։

ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամության ամրապնդման մեծ հաջողությունները ձեռք են բերված բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ։

Կոմունիստական պարտիան այսուհետև էլ կամրապնդի ՍՍՌՄ ժողովուրդների ստալինյան բարեկամությունը՝ մեր Հայրենիքի անպարտելիության երաշխիքը, Սովետական Միության ժողովուրդների անկախության և հետագա բարգավաճման պատվարը։ Քանի մեզ մոտ գոյություն ունի և ամրապնդվում է ժողովուրդների բարեկամությունը, մեր երկրի ժողովուրդները կլինեն ազատ ու անպարտելի։ Ո՛չ մի թշնամի մեզ համար սարսափելի չէ, քանի ապրում և բարգավաճում է այդ բարեկամությունը։

Ձայն տալով կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին, ընտրողները ձայն կտան այն բանի օգտին, որ Սովետական Միության ժողովուրդները այսուհետև էլ լինեն ազատ, իրավահավասար, որ հետագայում ևս աճի ու ամրապնդվի ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը։

Այն ժամանակ, երբ կապիտալիստական



երկրներում ավելի ու ավելի են սրվում դասակարգային հակասությունները, տեղի է ունենում բուրժուազիայի հետագա հարձակում աշխատավորների կենսական շահերի ու իրավունքների վրա, մեզ մոտ, սոցիալիստական կարգի պայմաններում, սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու պայմաններում, ամրապնդվում է ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը, ավելի ու ավելի է ծաղկում սոցիալիստական դեմոկրատիան, աճում է աշխատավորների քաղաքական ակտիվությունը։ Սովետական հայրենասիրության վեհ գաղափարը բանվորներին, գյուղացիներին և ինտելիգենցիային միավորում է կոմունիզմ կառուցողների հզոր և միակուռ բանակի շարքերում։ Ղեկավարելով կոմունիստական հասարակության կառուցումը, բոլշևիկների պարտիան անդուլ կերպով բարձրացնում է մասսաների կոմունիստական գիտակցությունը։

Ձայն տալով կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին, ընտրողները ձայն կտան այն բանի օգտին, որ աճեն ու ամրապնդվեն սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը, մեր սոցիալիստական դեմոկրատիան, որ

սովետական ժողովուրդն այսուհետև էլ լինի միասնական և համախմբված։

Սովետական Միությունը հաստատակամորեն ձգտում է խաղաղության՝ բոլոր պետությունների հետ, անդուլ կերպով պայքարում է խաղաղության համար, ընդդեմ պատերազմի հրձիգների։ Լենին-ստալինյան իմաստուն արտաքին քաղաքականությունը, ՍՍՌՄ-ի հետևողական և վճռական պայքարը հանուն խաղաղության և ժողովուրդների համագործակցության, մեր երկրի համար ապահովել են հարյուր միլիոնավոր մարդկանց համակրանքն ու աջակցությունը բոլոր երկրներում։ Սովետական Միությունը, ընկեր Ստալինի ղեկավարությամբ, բոլոր երկրների աշխատավորների ավանգարդն է՝ կայուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար նրանց պայքարում։

Սովետական Միության մեծ օրինակով ոգեշնչված՝ հաստատապես սոցիալիզմի ուղին են թևակոխել Լեհաստանը, Չեխոսլովակիան, Հունգարիան, Ռումինիան, Բուլղարիան, Ալբանիան, Մոնղոլական ժողովրդական ռեսպուբլիկան։ Խաղաղության և դեմոկրատիայի ճակատի ամրապնդման հզոր գործոն է հանդիսանում հաղթանակը բազմամիլիոն չին ժողովրդի, որն իր երկրից



վռնդեց իմպերիալիստական գիշատիչներին և ստեղծեց ժողովրդական դեմոկրատիայի պետությունը՝ Չինական ժողովրդական ռեսպուբլիկա։ Եվրոպայում խաղաղության գործի խոշորագույն հաղթանակ հանդիսացավ Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի կազմակերպումը։

Կոմունիստական պարտիան այսուհետև էլ անդուլ կերպով կպայքարի միջազգային համագործակցության համար, ամբողջ աշխարհում խաղաղությունն հաստատելու համար։ Նա կպայքարի ժողովրդական դեմոկրատիայի երկրների հետ եղբայրական կապերն ամրապնդելու համար։ Այժմ խնդիրն այն է, որ հենվելով խաղաղության կողմնակից բոլոր ուժերի միասնության վրա, վիժեցնեն իմպերիալիստական ագրեսորների պլանները, անհնարին դարձնեն պատերազմը։ Սովետական ժողովուրդը խորապես համոզված է, որ երկու սիստեմների խաղաղ մրցակցության մեջ ապահովված է սոցիալիզմի հաղթանակը կապիտալիզմի նկատմամբ։ Դրա հետ միասին սովետական մարդիկ հավատացած են, որ եթե իմպերիալիստները նոր պատերազմ հրահրեն մեր խաղաղասեր երկրի դեմ, ապա Սովետական Միությունը, ամբողջ աշխարհի ազատասեր ժողովուրդնե-

րի աջակցությամբ, գլխովին կջախջախի ամեն մի ագրեսորի։

Ձայն տալով կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին, ընտրողները ձայն կտան ՍՍՌՄ-ի ստալինյան իմաստուն արտաքին քաղաքականության օգտին, ժողովուրդների միջև կայուն խաղաղության օգտին, այն բանի օգտին, որ ընդլայնվի և ամրապնդվի խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի միջազգային ճակատը։

Սովետական ժողովրդի խաղաղ ստեղծարար աշխատանքը և նրա անվտանգությունը հուսալի կերպով պաշտպանում է մեր պանծալի Սովետական Բանակը, որը պատերազմից դուրս եկավ որպես մեր ժամանակի առաջնակարգ բանակ, որն ունի կատարելագործված սպառազինություն, ամենափորձված հրամանատարական կազմ, բարոյական-մարտական բարձր հատկություններ։ Հետպատերազմյան տարիներին Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի հրամանատարական ու շարքային կազմն անընդհատ կատարելագործում են իրենց մարտական ու քաղաքական պատրաստությունը, տիրապետում են այն ռազմական բարձր տեխնիկային, որ սոցիալիստական



արդյունաբերությունը տալիս է Զինված Ուժերին։ ՍՍՌՄ-ի Զինված Ուժերը սարսափ են հանդիսանում ամեն տեսակ ագրեսորների և համաշխարհային տիրապետության հավակնորդների համար։ Սովետական ժողովուրդը կարող է վստահ լինել իր փառապանծ բանակի նկատմամբ։

Սովետական Զինված Ուժերի հաջողությունները ապահովել է կոմունիստական պարտիան։ Ղեկավարվելով Լենինի և Ստալինի այն ցուցումներով, որ քանի գոյություն ունի կապիտալիստական աշխարհը, գոյություն կունենա նաև ՍՍՌՄ-ի վրա իմպերիալիստական հարձակման սպառնալիքը, կոմունիստական պարտիան իր առաջ խնդիր է դնում անշեղորեն ամրապնդել ՍՍՌՄ-ի Զինված Ուժերը։

Ձայն տալով կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին, ընտրողները ձայն կտան այն բանի օգտին, որ Սովետական Միության սահմաններն այսուհետև էլ անմատչելի լինեն ամեն մի թշնամու համար, որ ամրապնդվեն Սովետական Միության Զինված Ուժերը, որոնք աչալուրջ կերպով պահպանում են նվաճված խաղաղությունը և սովետական ժողովրդի ստեղծարար աշխատանքը, մեր սոցիալիստական Հայրենիքի շահերը։

Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան, հանդիսանալով սովետական ժողովրդի ղեկավար ուժը, հաջողությամբ ուղղություն է տալիս մեր սոցիալիստական Հայրենիքի առաջընթացին դեպի կոմունիզմ, այդ մեծ նպատակին է ենթարկում մեր ամբողջ տնտեսական և կուլտուրական շինարարությունը։ Լենին-Ստալինի պարտիան ոգեշնչում և կազմակերպում է տնտեսության, կուլտուրայի, գիտության և արվեստի բոլոր ճյուղերի հետագա հզոր զարգացումը։

Ժողովրդի ազատության և երջանկության համար, մեր Հայրենիքի անկախության և ծաղկման համար, մեր երկրում կոմունիստական հասարակության կառուցելու համար մղվող պայքարի բոլոր էտապներում բոլշևիկների պարտիան հաջողություններ է ձեռք բերել այն պատճառով, որ հենվել է միլիոնավոր սովետական մարդկանց ստեղծարար ակտիվության վրա, անխոնջ կերպով ամրապնդել է մասսաների հետ ունեցած կապերը, մշտապես ունկնդրել է մասսաների ձայնին։

Մեր երկրի առաջ կանգնած պատմական խնդիրների հաջող կենսագործումն անխզելիորեն կապված է բոլշևիկյան քննադատության և ինքնաքննադատության՝ մեր զարգացման հիմնական պայմաններից մեկի ծա-



վալման հետ։ Պարտիան ձգտում է, որ բոլոր պարտիական և անպարտիական ընկերները համարձակորեն բացահայտեն մեր աշխատանքում եղած թերությունները և ուղիներ նշեն դրանց վերացման համար։ Պարտիան իր առաջ խնդիր է դնում պաշտպանել և զարգացնել սովետական և տնտեսական կազմակերպությունների աշխատանքի առողջ քննադատությունը, բոլոր միջոցները ձեռք առնել բացահայտված թերությունները վերացնելու համար։ Դա անհրաժեշտ է, որպեսզի մեր ամբողջ աշխատանքը, մեր ամբողջ կոմունիստական շինարարությունը օրեց-օր բարելավվի և ընթանա հաջողությունից հաջողություն։

Կոմունիստական պարտիան Հայրենիքին իր անձնվեր ծառայությամբ նվաճել է սովետական ժողովրդի վստահությունն ու սերը։ Պարտիան բարձր և թանկ է գնահատում այդ վստահությունը։ Կոմունիստական պարտիան առաջիկայում ևս լիահույս է սովետական ժողովրդի վստահության նկատմամբ։

Կոմունիստական պարտիայի ամբողջ գործունեությունը ցույց է տալիս, որ նա իրոք ընդունակ է պաշտպանել ժողովրդի շահերը։ Ամբողջ աշխարհի աշխատավորները Լենին-Ստալինի պարտիայի օրինակով սովորում են, թե ինչպես պետք է պայքարեն ճնշման ու

բռնության դեմ հաղթած ազատության, հանուն սոցիալիզմի։ Մեր երկրի ժողովուրդները, վստահ իրենց ուժի և արդար գործի հաղթանակի նկատմամբ, համախմբված իրենց մարտական ավանգարդ բոլշևիկյան պարտիայի շուրջը, անհունորեն նվիրված Լենինի-Ստալինի գործին, աշխատավորների մեծ առաջնորդ ընկեր Ստալինի իմաստուն և փորձված ղեկավարությամբ, բոլոր երկրների աշխատավորներին ցույց են տալիս դեպի պայծառ ապագան տանող ուղին։

Կոմունիստական պարտիան իր մեծ առաջնորդ, Լենինի անմահ գործի հանճարեղ շարունակող ընկեր Ստալինի ղեկավարությամբ սովետական ժողովրդին վստահ ու հաստատ տանում է դեպի կոմունիզմ։

Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի Կենտրոնական Կոմիտեն բոլոր ընտրողներին՝ բանվորներին ու բանվորուհիներին, գյուղացիներին ու գեղջկուհիներին, Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի ռազմիկներին, սովետական ինտելիգենցիային կոչ է անում ՍՍՌ Միության Գերագույն Սովետի առաջիկա ընտրություններին էլ ավելի սերտորեն համախմբվել կոմունիստական պարտիայի շուրջը, Սովետական Միության ժողովուրդների առաջնորդ և ուսուցիչ ընկեր



Ստալինի շուրջը՝ պայքարելու մեր Հայրենիքի հետագա ծաղկման համար, մեր երկրում կոմունիզմի հաղթանակի համար։

Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն բոլոր կոմունիստներին կոչ է անում դեպուտատության անպարտիական թեկնածուների օգտին ձայն տալ նույնպիսի միահամուռությամբ, ինչպես կոմունիստ թեկնածուների օգտին։ Կոմունիստական պարտիան լիահույս է, որ անպարտիական ընտրողները Գերագույն Սովետի դեպուտատության կոմունիստ թեկնածուների օգտին ձայն կտան նույնպիսի միահամուռությամբ, ինչպես անպարտիական թեկնածուների օգտին։

Ընկեր ընտրողնե՛ր։ Ձայն տվեք կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկածուների օգտին։

Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն բոլոր ընտրողներին կոչ է անում 1950 թվականի մարտի 12-ին, բոլորը մեկ մարդու նման, գնալ դեպի քվեատուփերը։ Չպետք է լինի ո՛չ մի ընտրող, որը չօգտագործի ՍՍՌ Միության Գերագույն Սովետի դեպուտատ ընտրելու իր պատվավոր իրավունքը։

1950 թվականի մարտի 12-ի օրը թող դառ-

*նաև Սովետական Միության աշխատավորնե-րի համաժողովրդական տոնի օր, Լենինի-Ստալինի պարտիայի շուրջը նրանց միաս-նության և համախմբվածության ցույցը:*

ԲՈԼՈՐՍ ԴԵՊԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ:

Կեցցե՜ մեր մեծ սովետական Հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլի-կաների Միությունը:

Կեցցե՜ սովետական հզոր ժողովուրդը:

Կեցցե՜ կոմունիստների և անպարտականների բլոկը ՍՍՌՄ Գերագույն Սովետի առա-ջիկա ընտրություններում:

Կեցցե՜ բոլշևիկների մեծ պարտիան, Լենին-Ստալինի պարտիան, սովետական ժողովրդի՝ մարտերում կոփված ավանգարդը, մեր բոլոր հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչը:

Կեցցե՜ կոմունիստական պարտիայի և սո-վետական ժողովրդի մեծ առաջնորդ և ուսու-ցիչ, մեր հարազատ ընկեր ՍՏԱԼԻՆԸ:

ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ (ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ) ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱ-ԿԱՆ ԿՈՄԻՏԵ

—О—

---

## ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ. ԳՐ. Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ՃԱՌԸ

Արտասանած ՍՍՌՄ Գերագույն Սովետի Միության Սովետի ընտրությունների Երե-վանի քաղաքային ընտրական օկրուգի ընտ-րողների նախընտրական ժողովում, 1950 թվի փետրվարի 21-ին:

*Ընկերնե՛ր: ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախօրյակին, ինչպես հա-մաժողովրդական մեծ տոնից առաջ, անհրա-ժեշտ է հանրագումարի բերել անցած ուղին, հանրագումարի բերել կատարված աշխա-տանքը՝ մեր հետագա առաջընթացի ուղի-ներն ավելի ճիշտ նշելու համար:*

*Ես կաշխատեմ համառոտակի նկարագրել այն աշխատանքը, որ կատարված է ՍՍՌՄ Գերագույն Սովետի վերջին ընտրություննե-րի և առաջիկա ընտրությունների միջև ըն-կած ժամանակաշրջանում: Անցած չորս տա-րիները եղել են հետպատերազմյան հնգա-մյակի պլանների, այն վիթխարի խնդիրների հաջող կատարման տարիներ, որ մեր իմաս-*

ռուն առաջնորդ և ուսուցիչ մեծ Ստալինը սովետական ժողովրդի առաջ դրեց 1946 թվականի փետրվարի 9-ի իր պատմական ճառում:

Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում ընկեր Ստալինի արտասանած ճառը հանդիսացավ Կոմունիստական պարտիայի աշխատանքի ռեալ ծրագիրը՝ մեր սոցիալիստական Հայրենիքի զարգացման հետպատերազմյան ժամանակաշրջանում: Մեծ առաջնորդն առավելագույն հստակությամբ դրեց մեր ժողովրդական տնտեսության, կուլտուրայի և գիտության զարգացման՝ ինչպես մոտակա տարիների, այնպես էլ ավելի երկարատև ժամանակաշրջանի խնդիրները:

Սովետական ժողովուրդը միահամուռ կերպով հավանություն տվեց ու ողջունեց Կոմունիստական պարտիայի պլանները և իր ընտրած դեպուտատներին նակազ տվեց՝ իրենց բոլոր ջանքերը գործադրել ընկեր Ստալինի առաջադրած խնդիրները լուծելու համար:

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը մեծագույն խանդավառությամբ սոցիալիստական լայն մրցություն ծավալեց ժողովրդական տըն-



տեսության վերականգնման ու զարգացման հետպատերազմյան հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար և հիանալի արդյունքների հասավ:

1949 թվականի չորրորդ եռամսյակում ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի ամսական միջին թողարկումը գերազանցեց հնգամյա պլանով 1950 թվականի համար սահմանված մակարդակը և 53 տոկոսով գերազանցեց արդյունաբերական արտադրանքի 1940 թվականի մակարդակը:

Խոշոր հաջողություններ են ձեռք բերված նաև սոցիալիստական գյուղատնտեսության բնագավառում. գյուղատնտեսության մեջ համախառն արտադրանքը՝ ամբողջությամբ վերցրած, 1949 թվականին գերազանցեց նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը: Հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը կազմեց 7,6 միլիարդ փութ, գերազանցելով նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը և համարյա հասավ այն մակարդակին, որ հնգամյա պլանով սահմանված է 1950 թվականի համար: Աճեց գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը: Հաջողությամբ է կատարվում հանրային անասնաբուծության զարգաց-

ման նախօրյա պլանը։ 1949 թվականին մթերատու անասունների գլխաքանակը կոլտնտեսություններում ավելի շատ էր, քան նախապատերազմյան 1940 թվականին։

ՍՍՌՄ ազգային եկամուտը համադրական գներով 1949 թվականին՝ 1948 թվականի համեմատությամբ՝ աճեց 17 տոկոսով, և 36 տոկոսով ավելի էր, քան նախապատերազմյան 1940 թվականին։

Սովետական ժողովուրդների միասնական ընտանիքում, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ և Սովետական Միության սոցիալիստական ազգերի եղբայրական փոխադարձ օգնության շնորհիվ, Հայաստանը հասել է ժողովրդական տնտեսության, կուլտուրայի, գիտության, գրականության ու արվեստի նոր, մեծ վերելքի և ծաղկման։

Հայաստանի պարտիական կազմակերպությունը և աշխատավորները հետպատերազմյան տարիներին ինչպե՞ս են իրագործել ընկեր Ստալինի առաջադրած խնդիրները։

Չորս տարվա ընթացքում կառուցվել և շահագործման են հանձնվել ավելի քան 50 արդյունաբերական ձեռնարկություն, ընդլայնվել և վերակառուցվել է 27 ձեռնարկություն։ Այս բոլորի հետևանքով ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը, անփոփոխ գներով, 1949 թվականին՝ նախա-



պատերազմյան 1940 թվականի համեմատությամբ՝ կազմեց 215 տոկոս։

Նշանակալից աճ կա նաև առանձին ճյուղերի ու նատուրալ արտադրանքի տեսակների գծով։

Նատուրալ արտադրանքի աճն ըստ առանձին ճյուղերի և տեսակների արտահայտվում է հետևյալ թվերով.

| | |
|---|---|
| Քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների արտադրանքը կազմեց նախապատերազմյան մակարդակի | 213 տոկոսը |
| Մետաղամշակման արդյունաբերության (մեքենաշինության) արտադրանքը | 557 » |
| Կաուստիկ սոդայինը | 344 » |
| Ցեմենտինը | 132 » |
| Կոշկեղենինը | 136 » |
| Բամբակեղեն գործվածքներինը | 117 » |
| Բրդեղեն գործվածքներինը | 26 անգամ |
| Մետաքսյա գործվածքներինը | 714 տոկոսը |
| Գուլպեղենինը | 112 » |
| Տրիկոտաժ-սպիտակեղենինը | 215 » |
| Կոնսերվաներինը | 140 » |
| Օճառինը | 149 » |
| Գլանակներինը | 190 » |
| Էլեկտրաէներգիայինը | 175 ». |

1949 թվականին պատրաստված է.

| | |
|---|---|
| Պատուհանի ապակի | 182 հազ. քառ. մետր |
| Ժամացույցներ | 152 հազ. հատ. |
| Շաքար | մինչև 5 հազ. տոննա |

Գործարկվեց Սևանի լճային հիդրոէլեկտրակայանը։ Ավելի ու ավելի է ընդլայնվում ռեսպուբլիկայի էներգետիկ բազան։ Արդյունաբերության համախառն արտադրանքի մեծ աճը ուղեկցվում է ձեռնարկությունների աշխատանքի բոլոր հիմնական տեխնիկա-տընտեսական ցուցանիշների հետագա բարելավումով։

Արտադրանքի ինքնարժեքի իջեցման հետևանքով ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները 1948 թվականին 55 միլիոն ռուբլու գումարի արտապլանային կուտակում տվին։

Մեր ձեռնարկություններում սոցիալիստական մրցության լայն թափը նպաստեց ոչ միայն արտադրանքի քանակի ավելացմանը, այլև նրա որակի բարձրացմանը։

Սովետական մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունը և անձնազոհ նվիրվածությունը իրենց սոցիալիստական Հայրենիքին՝ մեծ հաջողություններ ապահովեցին արդյունաբերության բնագավառում։



Կոլխոզային կարգը հետպատերազմյան ժամանակաշրջանում նորից ցույց տվեց իր հսկայական առավելությունները, իր կենսական ուժը։ Հայաստանի կոլխոզնիկները և կոլխոզնիկուհիները կարճ ժամանակամիջոցում հիանալի հաջողություններ ձեռք բերեցին ինչպես գյուղատնտեսական հիմնական կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակելու, այնպես էլ բերքատվությունը բարձրացնելու բնագավառում։ Այսպես, օրինակ, համախառն արտադրանքը 1949 թվականին՝ նախապատերազմյան 1940 թըվականի համեմատությամբ կազմեց բամբակինը՝ 135 տոկոս, ծխախոտինը՝ 240 տոկոս, շաքարի ճակնդեղինը՝ 274 տոկոս, կարտոֆիլինը՝ 321 տոկոս։ Հայաստանում տարեցտարի բարձրանում է հացահատիկի համախառն բերքը, որն արդեն շատ ավելի գերազանցել է 1940 թվականի մակարդակը։

Լուրջ հաջողություններ են ձեռք բերվել հանրային անասնաբուծության զարգացման եռամյա պլանը կատարելու համար մղվող պայքարում։

Հաջողությամբ է ընթանում հանրային անասունների գլխաքանակի աճը կոլխոզներում։

Խոշոր եղջերավոր անասունների գլխա-

քանակը աճեց և 1949 թվականին, 1940 թվականի համեմատությամբ,

| | | |
|---|---|---|
| կազմեց | 124 | տոկոս |
| Կովերինը | 157 | » |
| Ոչխարներինը և այծերինը | 157 | » |
| Խոզերինը | 164 | » |
| Թռչուններինը | 248 | » |
| Մեղուներինը | 122 | » |

Ռուսման աշխատանքների ըստ ամենայնի ընդլայնումը և նոր հողամասերի ընդգրկումը գյուղատնտեսական շրջանառության մեջ՝ կոլխոզներին լայն հնարավորություն է տվել արմատավորելու և զարգացնելու գյուղատնտեսական թանկարժեք կուլտուրաները և գլխավորապես տեխնիկական կուլտուրաները, մերձարևադարձային պտղաբուծությունը, խաղողագործությունը, թեյենիների աճեցումը։

Գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման հետագա ուժեղացումը, սովետական ագրոբիոլոգիական գիտության նվաճումների արմատավորումը և կոլխոզնիկների ու կոլխոզնիկուհիների աշխատանքի արտադրողականության բարձրացումը տանում են դեպի կոլխոզային գյուղի աշխատավորների բարեկեցության հետա-



գա վերելք, դեպի է՛լ ավելի հարուստ, ունևոր և բերկրալից կյանք։

Ընկեր Ստալինը 1946 թվականի փետրվարի 9-ին ընտրողների առաջ արտասանած իր ճառում առանձնապես ընդգծեց աշխատավորների կենսամակարդակի բարձրացման հարցը, որպես մեր երկրի հետպատերազմյան զարգացման կարևորագույն հարցերից մեկը։ Արդյունաբերության և գյուղատնտեսության նոր վերելքը անմիջականորեն առաջ բերեց աշխատավորների նյութական-կենցաղային դրության հետագա բարելավում։

Ամենից առաջ պետք է նշել բանվորների և ծառայողների թվի աճը ժողովրդական տնտեսության մեջ։ 1949 թվականին բանվորների ու ծառայողների թիվը ժողովրդական տնտեսության մեջ՝ նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ՝ կազմեց 149 տոկոս, իսկ արդյունաբերության մեջ՝ 175 տոկոս։ 1949 թվականին՝ 1940 թվականի համեմատությամբ՝ աշխատավարձի ֆոնդը համապատասխանորեն աճեց 254 տոկոսով։

Նոր ձևով դրվեց ապրանքաշրջանառությունն ավելացնելու, առևտրական ցանցը և հասարակական սննդի սիստեմն ընդլայնելու

հարցը։ 1949 թվականին խանութների և կրպակների քանակը 1940 թվականի համեմատությամբ աճեց 119 տոկոսով։ Միայն քաղաքներում այդ աճը կազմում է 165 տոկոս։

Արդյունաբերության արտադրանքի իրացման մակարդակը գերազանցեց 1940 թվականի մակարդակը՝

| | | |
|---|---|---|
| միսինը և երշիկեղենինը | 287 | տոկոս |
| ձկնեղենինը | 138 | » |
| կենդանական յուղինը | 401 | » |
| շաքարինը | 125 | » |
| հրուշակեղենինը | 138 | » |
| մակարոնեղենինը | 286 | » |
| կրուպեղենինը՝ | 161 | » |
| պանրինը | 242 | » |
| լվացքի օճառինը | 174 | » |

Զգալի չափով ավելացել է գործվածքների, կոշկեղենի, կահույքի և մասսայական սպառման այլ ապրանքների իրացումը։

Հետպատերազմյան տարիներին զգալի չափով բարելավվեց աշխատավորների կուլտուր-մասսայական սպասարկումը։ Գրադարանների թիվն ավելացավ և 908-ից հասավ 1.437-ի, ակումբային հիմնարկներինը՝ 897-ից՝ 1.164-ի, կինոսարքավորումներինը՝ 196-ից՝ 312-ի։



Գյուղում ծավալվեց կուլտուրական հիմնարկների մեծ շինարարություն։ Բնակչությունը հնարավորություն ստացավ լայնորեն օգտվելու ձրի բուժօգնությամբ, բուժհիմնարկների աճող ցանցով։

Հիվանդանոցային մահճակալների թիվը նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ ավելացավ և

| | | |
|---|---|---|
| կազմեց | 142 | տոկոս |
| այդ թվում գյուղում | 183 | » |
| Ծննդատներում եղած մահճակալների թիվը կազմեց | 114 | տոկոս |
| այդ թվում գյուղում | 224 | » |
| Բժիշկների թիվն ավելացավ | 208 | » |
| այդ թվում գյուղական վայրերում | 302 | » |

Աճում է նաև կուլտուրական հիմնարկների, դպրոցների ցանցը։ Հաջողությամբ են իրագործվում ընդհանուր յոթնամյա ուսուցումը գյուղական վայրերում և միջնակարգ ուսուցումը քաղաքներում։ Տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում, տեխնիկումներում և այլ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորողների թիվը կազմում է 315 հազար մարդ։

1940 թվականի համեմատությամբ Հայաստանի բուհերի թիվը աճել և 9-ից հասել

է 14-ի, չհաշված հեռակա բուհերը։ Դրանցում սովորում է 10.122 ուսանող 1940 թվականի 5.786 ուսանողի դիմաց։ Անհամեմատ բարելավվել է լաբորատորիաների և կաբինետների հագեցումը ուսումնա-օժանդակ նոր պիտույքներով։

Ընկեր Ստալինը բացառիկ նշանակություն տալով սովետական գիտության զարգացմանը, 1946 թվականի փետրվարի 9-ին ընտրողների առաջ արտասանած իր ճառում խնդիր դրեց՝ մոտիկ ժամանակում հասնել և անցնել մեր երկրի սահմաններից դուրս գիտության ձեռք բերած նվաճումներից։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի վերջին ընտրություններից հետո անցած չորս տարիների ընթացքում Հայաստանում մեծ ուշադրություն է նվիրվել գիտա-հետազոտական հաստատությունների ցանցի զարգացմանը։ Եթե 1940 թվականին ռեսպուբլիկայում գործում էին 37 գիտա-հետազոտական հաստատություն, ապա 1949 թվականին դրանց թիվը հասավ 58-ի։ Համապատասխանորեն աճել են գիտական աշխատողների կադրերը՝ 414-ից հասնելով 918-ի։

Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի գիտական ինստիտուտները մեծ օգնություն են ցույց տալիս ժողովրդական



տնտեսությանը։ Մի շարք ինստիտուտներ իրենց գիտական նվաճումներով լուրջ ավանդ մտցրին սովետական առաջավոր գիտության արսենալում։ Բավական է հիշատակել Աստղադիտարանի գիտական աշխատանքներն աստրոֆիզիկայի բնագավառում և Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Ֆիզիկայի ինստիտուտի մշակած մի շարք կարևոր պրոբլեմները։

Հաջողությամբ են զարգանում գրականությունն ու արվեստը, դրան նպաստում է անհաշտ պայքարը ֆորմալիզմի, կոսմոպոլիտիզմի դեմ։ Հայաստանի գրողները, կոմպոզիտորները, նկարիչները, ազատվելով ֆորմալիստական սխալներից, ավելի ու ավելի խոր տիրապետելով սոցիալիստական ռեալիզմի մեթոդին, ստեղծում են կոմունիզմ կառուցողների հերոսական կերպարը պատկերող գաղափարապես հագեցված երկեր։

Մեր առաջատար թատրոնները ղեկավարվելով իդեոլոգիական հարցերի վերաբերյալ ՀամԿ՝բ)Պ Կենտկոմի պատմական որոշումներով, իրագործում են աշխատավորների կոմունիստական դաստիարակության իրենց

ֆունկցիան, նրանք իրենց բնմադրություն-ների մեջ համառորեն ցույց են տալիս նորի պայքարը հնի, իր դարն ապրածի դեմ, որը խանգարում է մեր առաջընթաց շարժմանը։

Աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման կարևոր ցուցանիշներից մեկը բնակարանների աճն է ինչպես քաղաքներում, այնպես էլ գյուղում։

Չորս տարվա ընթացքում շահագործման է հանձնվել ավելի քան 460 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, այդ թվում Երևան քաղաքում՝ 235 հազար քառ. մետր։ Բնակարանային ֆոնդը քաղաքներում և ավաններում աճել է և 1940 թվականի համեմատությամբ կազմում է 131 տոկոս։ Այդ նույն տարիներին գյուղերում կառուցվել է 10 հազար տուն։

Այդպիսի լայն շինարարություն հնարավոր էր իրագործել Միութենական կառավարության մեծ օգնության, Հայաստանի քաղաքների և գյուղերի ծաղկման նկատմամբ ընկեր Ստալինի ամենօրյա հոգատարության շնորհիվ։

Անհատական շենքեր կառուցողներին չորս



տարվա ընթացքում բաց է թողնվել ավելի քան 400 միլիոն ռուբլի վարկ։

Բնակարանային շինարարության լայն թափին ուղեկցվել է բարեկարգման, նորանոր փողոցների անցկացման, կանաչապատման, տներում ռադիո և հեռախոս անցկացնելու աշխատանքներով։ Մինչև 1950 թվականի փետրվարի 1-ը էլեկտրիֆիկացված է մոտ 500 կոլխոզ, որը կազմում է ռեսպուբլիկայի կոլխոզների համարյա 50 տոկոսը։ Մինչև ընթացիկ տարվա վերջը էլեկտրիֆիկացման կենթարկվի Հայաստանի կոլխոզների մոտ 70 տոկոսը։

Ներկայումս աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային Սովետի գործադիր կոմիտեն վերանայում է քաղաքի գլխավոր պլանը, որոշվում է մայրաքաղաքի հետագա ընդարձակման հարցը։ Նոր գլխավոր պլանի հիմքում դրվում են հետևյալ դրույթները. հաշվի առնելով, որ քաղաքի բնակչության մի մասը հիմնականում ապրում է հին՝ անբարեկարգ տներում, մոտակա հիմնական խնդիրն է բնակարանային շինարարության ընդարձակումը։ Հատուկ ուշադրություն է նվիրվում դպրոցների շինարարությանը, որպեսզի 1955 թվականին դպրոցնե-

րում խապառ վերացվեն երկրորդ և երրորդ հերթերի պարապմունքները։

Նախատեսվում է ծավալել քաղաքի կանաչապատման աշխատանքները՝ ինչպես պուրակներ և այգիներ ստեղծելու և փողոցները կանաչապատելու միջոցով, այնպես էլ քաղաքի շուրջը կանաչ գոտիներ ստեղծելու միջոցով, որը, անտարակույս, բարենպաստ ազդեցություն կգործի քաղաքի կլիմայի վրա։

Քաղաքի վերակառուցման նոր պլանի համաձայն նախատեսվում է բազալտով քարապատել Գետառի ափերը և առափնյա փողոց կառուցել գետի երկու ափերին՝ Ավանի կիրճից սկսած մինչև Շենգավիթի կամուրջը։

Քաղաքային տրանսպորտի լայն զարգացումը հնարավորություն կտա ծայրամասերն ավելի սերտորեն կապել կենտրոնի հետ և նորմալ կերպով սպասարկել քաղաքի բոլոր ռայոնները։

Սրանք են, ընդհանուր գծերով, ռեսպուբլիկայի աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման և բարեկեցության հետագա բարձրացման ասպա-



րեզում պարտիայի և կառավարության կողմից առաջադրված խնդիրների իրագործման արդյունքները։

Պետք է նշել, որ ռեսպուբլիկայի կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերված նվաճումներն ու հաջողություններն է՛լ ավելի մեծ կլինեին, եթե պարտիական, սովետական և տնտեսական օրգանների աշխատանքում գոյություն չունենային շատ թերություններ։ Թերությունների և սխալների բոլշևիկյան քննադատությունն ու ինքնաքննադատությունը հնարավորություն կտան հայտնաբերել և վերացնել աշխատանքում եղած բացերը, երաշխիք կհանդիսանան ընդդեմ ինքնահանգստացման ու դափնիների վրա նիրհելուն և, վերջին հաշվով, կարագացնեն մեր առաջընթացը սոցիալիզմից դեպի կոմունիզմ։

Այն ժամանակ, երբ սովետական երկրում օրեցօր զարգանում է ժողովրդական տնտեսությունը և ձեռք են բերվում նորանոր հաջողություններ ցույց տալով սոցիալիստական հասարակարգի ամբողջ կենսունակությունն ու առավելությունները, կապիտալի երկրներում գնալով ավելի է սրվում

ներքին դրությունը և տնտեսական ճգնաժամի մեջ նրանց ներգրավվելուն զուգընթաց աճում են գործազրկությունը, աշխատավորների աղքատությունն ու տառապանքները։

Մեզ սահմանակից Թյուրքիան և Իրանը հանդիսանում են լայն մասսաների աղքատացման, դեգրադացիայի և քայքայման ցայտուն օրինակ, թեև այդ երկրները չեն էլ մասնակցել վերջին համաշխարհային պատերազմին։

Թյուրքիայի և Իրանի տիրապետող բուրժուա-կալվածատիրական շրջանները, ներգրավվելով ամերիկյան իմպերիալիստների կողմից ստեղծվող ագրեսիվ բլոկների սիստեմում, դավաճանել են իրենց ժողովուրդների շահերին, նրանց դարձնելով թնդանոթի միս՝ ամերիկյան «աշխարհակալների» կողմից նախապատրաստվող նոր համաշխարհային պատերազմում։

Սովետական Միությունը, որն ընթանում է դեմոկրատական հակաիմպերիալիստական ճամբարի ավանգարդում, երեք-չորս տարվա ընթացքում վերականգնեց ժողովրդական տնտեսությունը և չտեսնված տեմպով այն



էլ ավելի է զարգացնում, հաջողությամբ կենսագործում է ստալինյան իմաստուն կանխագծումները՝ կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրը։

Ահա համառոտակի այն հաջողությունները, որ Հայաստանի աշխատավորները ձեռք են բերել ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների միջև ընկած ժամանակաշրջանում։

Այժմ, ընկերնե՛ր, արդեն ձեր գործն է դատել, թե ինչպես են աշխատել դեպուտատները, ինչպես են կենսագործվել ընկեր Ստալինի կողմից երկրի, յուրաքանչյուր ռեսպուբլիկայի առջև դրված խնդիրները, և նակազ տալ նոր ընտրվող դեպուտատներին։

Թույլ տվեք, ընկերնե՛ր, ձեզ շնորհակալություն հայտնել այն մեծ վստահության համար, որ դուք իմ նկատմամբ ցուցաբերում եք, առաջադրելով իմ թեկնածությունը որպես ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ։ Ես իմ կողմից հավաստիացնում եմ ձեզ, որ ես, որպես Լենինի-Ստալինի պարտիայի անդամ, չեմ խնայի իմ ուժերն ու եռանդը և կգործադրեմ իմ ամբողջ կարողու-

*թյան ու գիտելիքները՝ կենսագործելու համար ձեր նակազը՝ սովետական ժողովրդի առջև մեր մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի կողմից դրված խնդիրներն անշեղորեն իրագործելու ասպարեզում։* (Բուռն ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում: Լսվում են ողջույնի բացականչություններ ի պատիվ մեծ և իմաստուն առաջնորդ ընկեր Ստալինի):

---

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

*ՎՖ 02122 Պատվեր № 129 Տիրաժ 9.350*

*Հայպոլիգրաֆհարտի վարչության № 2 տպարան, Երևան*